14➲

կարող համարվել: Համոզված ենք նաև, որ արտագաղթի պատճառների վերացումը թույլ կտա ոչ միայն նվազեցնել դրա տեմպերը, այլև վերադարձի ճանապարհ բացել վերջին տարիներին երկրից հեռացած և օտար ափերին դեռևս չինտեգրված մեր հայրենակիցների համար:





Հակառակ դեպքում ծիծաղելի կդառնա (եթե արդեն ծիծաղելի չէ) հեռուստաեթերից անդադար հնչող «Արի տուն» կոչ-հորդորը:

Երրորդ. այդպես էլ չիմացանք, թե ինչու ընդդիմադիր համարվող մայրաքաղաքային առաջատար թերթերի ներկայացուցիչները չեն մասնակցում համաժողովին (հրավիրվել ու չե՞ն եկել, թե՞ չեն հրավիրվել): Շատ քիչ էին առաջատար հեռուստալրատվամիջոցների ներկայացուցիչները (սովորաբար նրանք արժանապատվությունից ցածր են համարում լրագրողական նման միջոցառումներին մասնակցելը): Զարմանալի էր Երևանի մամուլի ակումբի պահվածքը: Համաժողովի երկրորդ և երրորդ օրերին (հոկտեմբերի 14-15-ին) ակումբի ներկայացուցիչները եկել էին Սյունիք և եղած-չեղած մի քանի լրագրողի հետ սեմինար էին անցկացնում: Չենք ուզում վիճարկել այդ սեմինարի անհրաժեշտությունն ու կարևորությունը, բայց կարելի էր չէ՞ սեմինարը հետաձգել և մասնակցել լրագրողների համաժողովին:

Լրագրողական մեր համքարության պառակտվածությունը, մի խոսքով, նոր ուժով դրսևորվեց համաժողովում:

Չորրորդ. բոլորս միասին և համերաշխ շրջանցեցինք 2008-ի Մարտի 1-ից հետո հայաստանյան լրատվամիջոցների շուրջ ստեղծված վիճակը: Քանի-քանի լրագրողներ այդ ընթացքում ենթարկվեցին ոստիկանների հակասահմանադրական ու հակապետական մեքենայություններին, քանի-քանի լրագրողների արժանապատվություն տրորվեց: Հայ ժողովրդի, միջազգային կազմակերպությունների որոշակի մասի խորին համոզմամբ Հայաստանում վերջին տարիներին ունեցել ենք և ունենք քաղբանտարկյալ լրագրող: Իսկ մենք՝ համաժողովականներս, չհամարձակվեցինք ծպտուն հանել ցավալի այդ իրողությունների առնչությամբ:

Հինգերորդ. մենք գրեթե չքննարկեցինք լրատվական աշխարհի առջև ծառացած թիվ մեկ խնդրի՝ խոսքի ազատության իրական հնարավորությունների մասին հարցը: Թե ազատ խոսքն ինչ սահմաններ ունի համաժողովին մասնակցած 26 երկրնե՞րում, չենք կարող ասել: Բայց հո գիտե՞նք, թե ինչ արժե ազատ խոսքը մեր հանրապետությունում, թե ազատ խոսքի մասին ինչ պատկերացումներ կան վերևներում: Իսկ դա հարցերի հարցն է, եթե ուզում ենք իսկապես կրել լրագրողի, լրատվամիջոցի ծանր և պատասխանատու խաչը: Ի՞նչ մեկնաբանություն կարող է ունենալ, օրինակ, իրողությունը, որ եվրոպական կառույցներին ինտեգրվող և 21-րդ դարում ապրող մի ամբողջ երկրում գոնե մեկ ազատ, անկախ, այլընտրանքային հեռուստալրատվամիջոց չունենք:

Վեցերորդ. բազմաթիվ ելույթներում (նաև իշխանական թևի ներկայացուցիչների) խոստովանություն լսեցինք՝ մենք առայժմ պարտվում ենք հայ-ադրբեջանական, հայ-թուրքական լրատվական պատերազմում:



Այցելություն Արցախյան հերոսամարտի զոհերի հուշարձան

Բայց վախեցանք ճշտել՝ ինչո՞ւ ենք պարտվում, մանավանդ որ լրագրողական աշխարհը չէ այդ պարտությունների մեղավորը:

Յոթերորդ. ՀՀ սփյուռքի նախարար Հրանուշ Հակոբյանը թվարկեց այն չորս-հինգ (իր պատկերացմամբ) համազգային խնդիրները, որոնք ծառացած են ազգի, երկրի առջև, որոնց շուրջ պիտի համախմբվենք և աշխատենք: Համազգային այդ խնդիրներն են՝ Լեռնային Ղարաբաղի հիմնահարցի արդար լուծում, Ցեղասպանության ճանաչում, Հայաստանի Հանրապետության և Արցախի հզորացում ու զարգացում, մայրենի լեզվի, մշակույթի պահպանում և համախմբում Հայ առաքելական եկեղեցու շուրջ: Նախ՝ շատ վատ է ու անբնական, որ մեր համազգային խնդիրներն ազգովի չենք որոշարկել, որ դրանք համազգային են միայն նախարարի (թեկուզև իշխող խմբավորման) պատկերացմամբ: Այնուհետև, վիճարկելի է նշված խնդիրների համազգային լինելը մեր ընթացքի այս փուլում: Փոխարենը, համոզված ենք, պետք է կենտրոնանալ մեկ գերխնդրի վրա՝ Հայոց անկախ պետության կառուցում՝ իրավական, սոցիալական կողմնորոշմամբ, քաղաքացիական հասարակությամբ ու գործող սահմանադրությամբ: Սույն գերխնդիրը լուծելու դեպքում մյուս բոլոր խնդիրները կլուծվեն:

Ութերորդ. երկիրը, հասարակությունը սպասում են լրագրողական ճշմարիտ խոսքի (ո՛չ քարոզի, ո՛չ պրոպագանդայի). համենայնդեպս նման տպավորություն ստացանք համաժողովում հնչած որոշ ելույթներից: Բայց այդ սպասելիքն էլ

➲16

15Ͽ

բազում պատճառներով չի կարող կյանքի կոչվել այսօր:

Հեռուստակամուրջի ընթացքում հայաստանյան լրագրողներից մեկը հարց ուղղեց Կալիֆորնիայից մեզ հետ զրուցող խմբագրապետերին՝ ի՞նչ ազդեցություն ունեն ամերիկահայ լրատվամիջոցներն ԱՄՆ քաղաքականության վրա: Իսկ մե՞նք… Մենք մեզ չհարցրինք՝ կարողանո՞ւմ ենք ազդեցություն ունենալ Հայաստանի քաղաքականության վրա:

Իններորդ. Արցախի լրատվամիջոցների ներկայացուցիչները չերևացին համաժողովում: Եթե անգամ դահլիճում էին, ապա չլսվեց նրանց ձայնը: Փոխարենն այնտեղ էին արցախյան գրեթե բոլոր գերատեսչությունների մամլո քարտուղարները: Ճիշտ էր, ըստ էության, ելույթներից մեկում հնչած դիտարկումն արցախյան լրատվամիջոցների չկայացածության մասին, որը, հասկանալիորեն, հիվանդագին ընդունվեց տեղական նշանակության որոշ գործիչների կողմից:

Տասներորդ. մեզանում առկա մի իրողություն (տխուր, ավելի ճիշտ՝ ծիծաղելի) նորովի և ավելի ցցուն դրսևորվեց համաժողովի օրերին: Դա լրագրողներին, լրատվամիջոցներին ըստ կարևորության (ընտրյալների և ոչ ընտրյալների) բաժանելու մանրությունն է: Այսպես՝ ԼՂՀ նախագահ Բակո Սահակյանը Ստեփանակերտում ընդունեց միայն Սփյուռքի լրագրողներին և հայաստանցի «ընտրյալներին»: Սերժ Սարգսյանն էլ նույն ձևաչափով Գորիսում ընդունեց համաժողովի մասնակիցներին: Սկզբում ասացին, թե դահլիճը փոքր է, հետո պարզվեց, որ հանդիպման վայրը թատրոնի դահլիճն է, որի 500 տեղից 30-40-ն է միայն զբաղեցվել (Սփյուռքի որոշ լրագրողներ վիրավորվել էին նման խտրական մոտեցումից և հրաժարվել մասնակցել Սերժ Սարգսյանի հանդիպմանը): Ի դեպ, այդ սկզբունքով էին երկրի ղեկավարներն ընդունել Համահայկական լրատվամիջոցների ղեկավարների համաժողովի մասնակիցներին (17-22 սեպտեմբերի 2008 թ.): Այդ սկզբունքով էլ մայրաքաղաքային բոլոր միջոցառումներն են կազմակերպվում, ինչը, անկեղծ լինենք, բացառապես քմծիծաղի տեղիք է տալիս: Այդ սկզբունքով էլ համաժողովում ինչ-որ հանձնաժողովներ ձևավորվեցին:

Տասնմեկերորդ. որերորդ անգամ լրագրողների համաժողովին չհետաքրքրեց սկզբունքային մի հարց


Համաժողովի մասնակիցները Տիգրանակերտում

ևս՝ լրատվամիջոցների պահպանման, գոյապահպանման գերխնդիրը, ինչից ուղղակիորեն կախված են ազատ խոսքն ու անկաշկանդ գործունեությունը: Շատ վաղուց պարզաբանման կարիք ունի լրատվամիջոցներին հատկացվող պետական սուբսիդիաների բաժանման սկզբունքը: Շատ վաղուց պարզաբանման կարոտ է հարցը, թե ինչու որոշ գովազդների հրապարակումը կառավարության կողմից վերապահվել է կոնկրետ լրատվամիջոցների: Պարզաբանման կարոտ է հարցը, թե ինչպես է ստացվում, որ լրատվության առնչվող դրամաշնորհները մեծ մասամբ տրվում են նույն լրատվամիջոցներին կամ լրատվամիջոցների կցակառույց դարձած լրագրողական (մամուլի) ինչ-որ ակումբների:

Ամփոփենք խոսքը: Լրագրողների համահայկական 5-րդ համաժողովը, ցավոք, չլուծեց իր առջև ծառացած խնդիրները: Երիցս հաստատվեց պարզագույն ճշմարտությունը, որ լրագրողների համաժողովն այն միջոցառումը չէ, որ կարող է անցկացվել պետական որևէ գերատեսչության կողմից: Լրագրողների համահայկական համաժողովը պետք է կազմակերպվի միանգամայն այլ սկզբունքով:

Մեկ հարց ևս, որ հավանաբար ինձ կուղղեն իմ գործընկերները՝ իսկ ինչո՞ւ այդ ամենը չհնչեցրիք համաժողովում: Միանգամայն արդարացի այդ հարցն իր պատասխանն ունի: Լրագրողների համահայկական համաժողովը մեր պատկերացմամբ այն իրադարձությունն է, որի ընթացքում քննարկված հարցերի մասին կարելի է խոսել նաև համաժողովի աշխատանքների ավարտից հետո, քանի որ լրագրության հիմնահարցերի արծարծումը չի կարող սկսվել և ավարտվել մեկ համաժողովով:

***Սամվել ԱԼԵՔՍԱՆՅԱՆ***

# Ստեփանակերտում կայացավ «Հայապահպանության գործում ունեցած նշանակալի ավանդի համար» համահայկական մրցանակաբաշխություն «Լավագույն հայկական լրատվամիջոց» անվանակարգում

Հոկտեմբերի 15-ին Ստեփանակերտում հայ լրագրողների 5-րդ համաժողովի փակման հանդիսության ընթացքում կայացավ ՀՀ սփյուռքի նախարարության և Համաշխարհային հայկական կոնգրեսի կազմակերպած «**Հայապահպանության գործում ունեցած նշանակալի ավանդի համար**» համահայկական ամենամյա մրցանակաբաշխությունը «**Լավագույն հայկական լրատվամիջոց**» անվանակարգում:

Մրցանակաբաշխության հանդիսավոր արարողությանը ներկա էին ՀՀ սփյուռքի նախարար Հրանուշ Հակոբյանը, Համաշխարհային հայկական կոնգրեսի (ՀՀԿ) նախագահ Արա Աբրահամյանը, ՀՀԿ նախագահի առաջին տեղակալ Արամ Աբրահամյանը, Հայ լրագրողների 5-րդ համաժողովի մասնակիցները և հյուրեր:

«Լավագույն հայկական լրատվամիջոց» անվանակարգի տպագիր լրատվամիջոց (օրաթերթ, շաբաթաթերթ) ենթաանվանակարգում գլխավոր մրցանակ շնորհվեց «Ազդակ» օրաթերթին (Լիբանան, Բեյրութ): Այս ենթաանվանակարգում մրցանակակիրներ դարձան «Ժամանակ» օրաթերթը (Թուրքիա, Ստամբուլ), «Հորիզոն» շաբաթաթերթը (Կանադա, Մոնրեալ), «Ազատ օր» օրաթերթը (Հունաստան, Աթենք) և «Ալիք» օրաթերթը (Իրան, Թեհրան):

«**Լավագույն հայկական լրատվամիջոց» անվանակարգի տպագիր լրատվամիջոց (ամսագիր, ամսաթերթ, պարբերական, հանդես)** ենթաանվանակարգում գլխավոր մրցանակ

Ͽ17

16⊃

ստացավ «Համայնապատկեր» գրական մշակութային հանդեսը (ԱՄՆ, Գլենդել): Այս ենթաանվանակարգում մրցանակակիրներ դարձան «Անիվ» ամսագիրը (ՌԴ, Մոսկվա), «Օրեր» ամսագիրը (Չեխիա, Պրահա) և **«ԳործԱրար» ամսագիրը (ՌԴ, Կալուգա)**:

«Լավագույն հայկական լրատվամիջոց» անվանակարգի ինտերնետային լրատվամիջոց ենթաանվանակարգում գլխավոր մրցանակ շնորհվեց «Անալիտիկա» կայքէջին (Ուկրաինա, Կիև): Այս ենթաանվանակարգում մրցանակակիրներ դարձան «Կիպրահայեր» կայքէջը (Կիպրոս, Նիկոսիա) և «Քոլեքթիվ Վան» կայքէջը (Ֆրանսիա, Իսի Լե Մուլինո):

«Լավագույն հայկական լրատվամիջոց» անվանակարգի ռադիոեթեր ենթաանվանակարգում գլխավոր մրցանակ շնորհվեց «Վանայ ձայն» ռադիոյին (Լիբանան, Բեյրութ): Այս ենթաանվանակարգում մրցանակակիրներ դարձան «Կոմիտաս» ռադիոժամը (Ուրուգվայ, Մոնտեվիդեո), «Ռադիո Արմենի»-ն (Ֆրանսիա, Լիոն) և «Բոստոնի հայկական անկախ ձայնասփյուռ» ռադիոժամը (ԱՄՆ, Ուոթերթաուն):

«Լավագույն հայկական լրատվամիջոց» անվանակարգի հեռուստատեսություն ենթաանվանակարգում գլխավոր մրցանակ շնորհվեց «ԷյԱրԹիէն-Շանթ» հեռուստատեսությանը (ԱՄՆ, Գլենդել): Այս ենթաանվանակարգում մրցանակակիրներ դարձան Վրաստանի հանրային հեռուստատեսության «Մոամբե» լրատվական ծրագրի հայերեն ծրագիրը (Վրաստան, Թբիլիսի), «Կարկաչ» հեռուստատեսությունը (ԱՄՆ, Վալենսիա) և «Էքսպրես




TV» հեռուստաընկերությունը (ԱՄՆ, Գլենդել):

Հայաստան համահայկական հիմնադրամի սահմանած խրախուսական մրցանակին արժանացան «Արնիկ» ամսաթերթը (Վրաստան, Թբիլիսի), «Ազատ հայ» կայքը (ԱՄԷ, Դուբայ), «Հայրենիք» շաբաթաթերթը (Իսպանիա, Միսլատա), «Ուրարտու» ամսաթերթը (ՌԴ, Օմսկ):

«Խաչքար» ամսագիրը (ՌԴ, Կրասնոդար) արժանացավ «Հայաստանի Հանրապետության» խմբագրության խրախուսական մրցանակին:

ՀՀ կենտրոնական բանկի սահմանած խրախուսական մրցանակներ հանձնվեցին «Լա Նորա Արմենիա» ռադիոժամին (Արգենտինա, Բուենոս Այրես) և «Ռադիո Սևան»-ին (Լիբանան, Բեյրութ):

Երևանի պետական համալսարանի սահմանած խրախուսական մրցանակը շնորհվեց «Օստրովոկ Նաիրի» պարբերականին (ՌԴ, Սմոլենսկ):

«Նաիրի վ Կալինինգրադե» ամսաթերթը (ՌԴ) ստացավ Հայաստանի ժուռնալիստների միության խրախուսական մրցանակը:

## Ջանազան-զարմանազան

Այս տարի հոկտեմբերի 10-ին նշվեց քաղաքամայր Երևանի 2792-ամյակը: Ընթերցողների ուշադրությանն ենք ներկայացնում հետաքրքիր դեպքեր ու իրադարձություններ մեր մայրաքաղաքի պատմությունից:

Երևանի մասին առաջին գրավոր հիշատակությունը համարվում է Արգիշտի 1-ին թագավորի թողած արձանագրությունը Ք.ա. 782 թ. Էրեբունի ամրոցի կառուցման մասին:




Հայ պատմագիրների կողմից Երևանն առա-ջին անգամ հիշատակվում է 5-րդ դարում: Այդ ժամանակաշրջանին պատկանող մի հիշատակարանում գրված է, որ Մովսես Խորենացին և Դավիթ Անհաղթը, տեսնելով իրենց երկրի ավերումը պարսից Հազկերտ արքայի կողմից, մեծ վիշտ են ապրում և փորձում են մեկուսանալ, իսկ «Դավիթը, Մամբրեն, Պողոսը և Աբրահամը՝ Մովսեսի ընկերները, մնացին Երևանում»:

Երևանի առաջին եկեղեցին համարվում է Պողոս-Պետրոսը, որը կառուցվել է 5-6 դդ., քաղաքի կենտրոնում (այժմ՝ կինոթատրոն Մոսկվայի տեղում): 1679 թ. Երևանի ավերիչ երկրաշարժի ժամանակ քանդվել, ապա վերակառուցվել է հին օրինակով: Հիմնովին քանդվել է 1931 թ.: Եկեղեցու հարուստ որմնանկարները շերտ առ շերտ հանվել են և հանձնվել քաղաքի թանգարաններին: Մեկ որմնանկար, ծաղկազոտի և Պողոս առաքյալի դիմանկարը պահվում են Երևան քաղաքի պատմության թանգարանում: Այստեղ է պահվում նաև եկեղեցու դուռը, որը բերվել է հին Բայազետից: 1835 թ. բայազետցի Մուխսի Սաքոն բերդի դուռը բերել է Երևան, իսկ երևանցի տեր Վարդանը գնել և նվիրել է Պողոս-Պետրոս եկեղեցուն:

Արաբներն առաջին անգամ արշավեցին Երևանի վրա 640 թ.:

15-րդ դարի սկզբին Երևանն առաջին անգամ դառնում է վարչական կենտրոն: Կարա-կոյուն-լու Ջհանշահը (1437-1467 թթ.) իր նվաճած Արարատյան աշխարհի մեծագույն մասը միավորում է կուսակալության մեջ, որի կենտրոնն է դառնում Երևանը: Կուսակալ է նշանակվում Յաղուբ բեկը:

1502 թ. Երևանն առաջին անգամ դառնում է պարսից սարդարի նստավայրը, այնուհետև մինչև 1639 թ. քաղաքը և նրա բերդը 14 անգամ ձեռքից ձեռք են անցնում (պարսիկների և թուրքերի): 1639-1827 թթ. քաղաքը մնում է պարսիկների ձեռքին:

1632 թ. առաջին անգամ Երևան այցելած ֆրանսիացի ճանապարհորդ Ժան Բատիստ Տավերնիեն իր ճամփորդական նոթերում նկարագրում և կազմում է Երևանի հատակագիծը, որը պահվում է Երևանի պատմության թանգարանում:

1652-53 թթ. Երևանի խմելու սուղ ջրի հարցը առաջինը փորձում է լուծել մեծահարուստ Խոջա Գրիգորը՝ Մոծակ մականունով: Նրա միջոցներով Գետառից ջուր է բերվում Կաթողիկե եկեղեցու բակը, որից օգտվում են նաև շրջակա թաղերը:

1804 թ. հուլիսին ռուսական զորքերը գեներալ Ցիցիանովի գլխավորությամբ առաջին անգամ արշավեցին Երևանի վրա, պաշարեցին Երևանի բերդը, բայց գրավել չկարողացան:

1827 թ. հոկտեմբերի 1-ին Երեւանը եւ նրա բերդը գրավում են ռուսական զորքերը:

1827 թ. դեկտեմբերի 2-ին առաջին անգամ Երևանի բերդի տարածքում՝ սարդարի պալատի հայելազարդ դահլիճում, բեմադրվեց Ա. Ս. Գրիբոյեդովի «Խելքից պատուհաս» կատակերգությունը հեղինակի մասնակցությամբ: Դա, ըստ էության, Երևանում առաջին թատերական ներկայացումն էր:

1830 թ. Երևանում՝ բերդի տարածքում, գեներալ Պասկևիչի հրամանով բացվեց առաջին դեղատունը: Զինվորական այդ դեղատունը համաճարակների ժամանակ սպասարկում էր նաև քաղաքացիներին:

1832 թ. հունվարի 14-ին Երևանում բացվեց առաջին պետական արական գավառական դպրոցը, որը 1868 թ. դարձավ պրոգիմնազիա, իսկ 1881 թ.՝ գիմնազիա: 1920 թ. նրա հիման վրա ստեղծվեց երկրորդ աստիճանի համար երկրորդ դպրոցը, որը 1925 թվականից կրում է Խ. Աբովյանի անունը:

1837 թ. օգոստոսի 7-ին ռուսների կողմից կազմվեց Երևան քաղաքի ու բերդի առաջին ճշգրիտ հատակագիծը:

1837 թ. սեպտեմբերի 2-ին Երևանում Սինոդի հրամանով բացվեց Հայոց հոգևոր թեմական դպրոցը:

1850 թ. հունվարի 2-ին Երևանում Տիկնանց բարեգործական ընկերության ջանքերով բացվեց

⊃23

# Երևանի Կապալյան վարժարան

***Ուսուցչի ամբողջ հարստությունը աշակերտների մեջ է, նրա ցանած սերմերի աճի մեջ է:***



Մարգարիտա Կապալյանը եւ Լիլիթ Խանամիրյանը



Մարգարիտա Կապալյանը

Արդեն տասնմեկ տարի բարությունը սերմ է տալիս Երևանի Կապալյան մասնավոր վարժարանում:

Արդեն տասնմեկ տարի վարժարանի կամարների ներքո մանկավարժները՝ որպես բարության սերմնացաններ, տասնյակ երեխաների զինում են լույսով, գիտելիքներով ու ճանապարհում մեծ, իսկական կյանք: Այսպես տող-տող, էջ-էջ հյուսվում է ուսումնական հաստատության պատմությունը:

Պարզ, անհավակնոտ պատմություն, առանց որի դպրոցի վաղվա օրը անհնար ունկընդիրը:

Ամեն առավոտ դպրոցի բակում մի լուսավոր ժպիտ դիմավորում է աշակերտներին: Դիմավորում ու բոլորի սրտերը լցնում նոր սիրով, նոր նվիրվածությամբ: Զարմանալի է՝ այդ փխրուն, բայցև մեծ հոգում ինչքա՜ն սեր և քնքշանք կա ամփոփված:

Տարիների ծալքերում դարս-դարս կուտակված է այն մեծ վաստակը, որով քանի-քանի սերունդ է ճանապարհել տարբեր կրթօջախներից: Իսկ այսօր ապրում է իր իսկ հիմնադրած Կապալյան վարժարանի հասունացող պտուղների բույրով արբեցած:



Դասղեկ Նազելի Լազարյանը իր աշակերտների հետ



Նազելի Լազարյանը

կդառնար և իմաստազուրկ:

Ով է կանգնած այդ պատմության ակունքում, ովքե՞ր են կերտում այսօր այս վարժարանի պատմությունը, նրա ապագան:

**Մարգարիտա Կապալյան:** Մարդ, որ ծնվել է մանկավարժի հոգեբանությամբ ու կես դարից ավելի ապրում ու շնչում է այդ հոգեբանությամբ, կես դարից ավելի թերթում է կյանքի էջեր, զգում ամեն մեկի հոգու տվայտանքը, լսում հետաքրքիր պատմություններ, դառնում այդ պատմությունների գործող անձը, մասնակիցը,

Նրա թիկունքում վաստակի տարիները հաճելիորեն ծանրացել են հարուստ բեռով: Գիտի յուրաքանչյուր աշակերտի ընտանիքի պատմությունը, հետաքրքիր խոսք ու զրույց է վարում թե մեծերի, թե փոքրերի հետ: Սկսած գործը երբեք անավարտ չի թողնում, գիտի իր գործի յուրաքանչյուր մանրամասը, խիստ հետևողական է բոլոր հարցերում: Դրանից է, որ դպրոցի ներսում միշտ լույս է ճառագում, տիրում է կարգ ու կանոնը, հարգանքն ու սերը:

Ասում են՝ ցանկացած ճակատամարտում հաղթում է նա, ով հասնում է իր առջև դրված նպատակին: Մարգարիտա Կապալյանը հասավ իր նպատակին, և այսօր կրթօջախը ամուր, կայուն հիմքերի վրա է:

Գործադիր տնօրեն **Լիլիթ Վարդգեսի Խանամիրյանը**, մանկավարժներ **Նազելի Լազարյանը, Զառա Հարությունյանը, Մարինե Բաղդասարյանը** ժամանակակից մտածողությամբ, նոր շնչով ու փայլով զարդարում են դպրոցը, ուր ոտք դնելիս ամեն ոք, ամեն աշակերտ հպարտություն ու հրճվանք է ապրում:

Այսօր պետք է փաստել, որ ուսուցիչն է աշխատում ամենապատասխանատու խնդրի վրա, ապագան կառուցողին նա է ձևավորում:

Սուրբ Մեսրոպ Մաշտոցի կտակին հավատարիմ ուսուցիչ է դասարաններից մեկի դասղեկը, որին մանուկների շուրթերն ընկեր Լազարյան են անվանում: Իրոք, նա ընկերն է իր աշակերտների, սիրեցյալ անձնավորությունը նրանց ծնողների, տատիկների ու պապիկների, որոնք իրենց ունեցած ամենամեծարժեք գանձի արժևորումը, կրթությունն ու դաստիարակությունը վստահել են նրան՝ Նազելի Լազարյանին:

**Նազելի Լազարյանը** բանիմաց մանկավարժ է, իմաստացած ուսուցիչ: Տիրապետում է մանկավարժահոգեբանական բազում հնարքների, ընկալում ու յուրացնում է բարեփոխումներ ապրող կրթական համակարգում ծնվող նորույթները, համարձակ կիրառում դրանք և, որ կարևորն է, հասնում դրական արդյունքների:

Կապալյան վարժարանի մանկավարժները մանուկ հոգի մտնելու ճանապարհը իրենց մանկության արահետով են անցնում: Ահա թե ինչու վարժարանին հաջողվում է չմանավել, չկրկնվել:

Նրանք ունեն մանկան հոգին բացելու իրենց բանալիները, որ գալիս են մանկությունից ու գնում դեպի մանկություն:

***ԼԵւոն ԽԱՉԱՏՐՅԱՆ***

# Ձեռք բերված նկարագիր

*Գրադարանը մարդկային հոգու*
*բոլոր հարստությունների գանձարանն է:*
**Լյուբնից**

Լոռու մարզում Ղարաքիլիսա-Կիրովական-Վանաձոր գրադարանային գործունեությունը 95-ամյա տարեգրությամբ, ինքնատիպ ձեռագրով մարզի և Վանաձոր քաղաքի անաղմուկ ու ռիթմիկ գործող հաստատություններից մեկն է: 1915 թ-ից հետո հիմնադրված այդ գրապահոցները տարածաշրջանում առանձնացել են իրենց ծիրքով ու նշանակությամբ: Եվ կամա թե ակամա անհրաժեշտություն է գնահատել գրադարանների անցած ճանապարհը:

Դեռ 1915 թ-ին փայլուն ուղղամտությամբ և ուժեղ տրամադրությամբ առանձնացող ղարաքիլիսեցի սակավաթիվ ինտելիգենտներից մեկի՝ Վերգինե Մխիթարյանի կողմից կազմակերպված ժողովրդական գրադարանի բազայի վրա 1927 թ-ին ստեղծվեց քաղաքային գրադարան, որն իր 5-6 հազար կտոր գրականությամբ և մի քանի հարյուր բաժանորդ-ընթերցողներով հանդիսացավ տարածաշրջանի գրադարանաշինության հիմքը: 1940 թ-ին ունեցավ իր նորակառույց շենքը, որն արդեն հարստացել էր 2000 կտոր գրականությամբ՝ իր ընթերցողների շարքերը համալրելով 2000 բաժանորդով: 1975 թ-ին գրադարանները կենտրոնացվեցին մեկ համակարգի մեջ՝ 6 մանկական և մասսայական մասնաճյուղերով:

Նույն տարում համակարգի կենտրոնական գրադարանը տեղավորվեց նոր շենքում:

1998 թ-ին անջատվեց համակարգից՝ դառնալով հանրապետական, այնուհետև Լոռու մարզային գրադարան, որի տնօ-



աշխատանքը, բավարարվածությունը կատարած աշխատանքից:

Իսկ գնահատականը՝

- Կիրովականի գրադարանը հանդիսանում է փորձառու մարդկանց և ուսումնատենչ երիտասարդների համար ինտելեկտուալ աճի իսկական օջախ…

Վիլյամ Սարոյան

Աշխարհահռչակ հայորդու այսպիսի արժանի գնահատական:

Ցանկացած հաստատություն ունի իր կենսագրությունը: Այդ կենսագրության հիմքը դրել ու կերտել են գործիմաց մասնագետ-նվիրյալներ, որոնք իրենց գործով մինչ օրս ներդաշնակված են սիրելի հաստատության տարեգրությանը:

տնօրեններ էդիկ Ղազարյան, Ալբերտ Լոռեցյան…

Այսօրվա նվիրյալներն էլ ավելի են հարստացնում հաստատության պատմությունը նորանոր նվաճումներով ու հաստատում, որ իրավամբ հանրային գրադարանը գաղափարների բաց սեղան է, որի շուրջ հրավիրված է ամեն ոք:

Մեծարանքի են արժանի բաժինների և ենթաբաժինների վարիչներ Սիլվա Բաղդասարյանը, Մայա Հովհաննեսյանը, Անահիտ Հակոբյանը, Անդրանիկ Հովհաննեսյանը, Սուսաննա Դանիելյանը, Ռուզաննա Խաչատրյանը, Ռուբինա Մխիթարյանը, աշխատակիցներ Նաիրա Խաչատրյանը, Աստղիկ Խուդինյանը, Զաբելլա Աբրահամյանը, Հրանուշ Հարթենյանը, Մարինա Մանուչարյանը, Ալլա Դուլյանը:

1987 թ-ից գրադարանների կենտրոնացված համակարգի փոխտնօրեն նշանակվեց Ֆրոսյա Ջանջուղազյանը, ով իր բեղուն աշխատանքային գործունեությունը շարունակում է Լոռու մարզային գրադարանում: Գրադարանավարական գիտելիքներն ու տարիների փորձը Ֆրոսյային դարձրել են անփոխարինելի մասնագետխորհրդատու ընթերցասերի համար: Այս բարեհամբույր կինը գրադարանավարի փայլուն օրինակ է: Նրա ու գործընկերների կազմակերպած ամեն մի ցուցահանդես (կազմակերպվում է հարուստ գրքային ցուցահանդեսներ նվիրված հիշարժան տարեթվերին, հրատարակում «Նոր գրքեր»





րենն էր երջանկահիշատակ Լաերտ Մկրտչյանը:

2003 թ-ից Լոռու մարզային գրադարանի տնօրենն է Անահիտ Քոչարյանը:

Ներկայացվածը միայն տարեթվերի հակիրճ էքսկուրս էր, տարեթվեր, որոնցում խտացված են սիրած գործին նվիրվածությունը, կայանալու համար տքնաջան

Ցոլիկ Ղազարյան, 40-ականների մանկական գրադարանի վարիչներ Հովհաննես Միքայելյան, Ամալյա Խաչատրյան, Մաքսիմ Գորկու անվան գրադարանի վարիչ Արտաշես Մխիթարյան, համակարգի

գրականության տեղեկատու ցանկեր…

Գրադարանում գործում է «Ռուսական հյուրասրահ», որը կազմակերպում է ցերեկույթներ, գրական երաժշտական երեկոներ, գրքային հարուստ ցուցահանդեսներ նվիրված ռուս գրողներին, արվես-

⊃20

19Ͻ

տի և մշակույթի գործիչներին), թե ցուցապաստառ վկայում են գրադարանագիտության և մատենագիտության խորը իմացությունը:

Մենք բոլորս՝ մանկահասակ, դպրոցի շրջանավարտ, թե ուսանող, երազում ենք դառնալ լավ բժիշկ, աշխարհահռչակ ճարտարագետ, երկրի նախագահ…

Ամեն մեկս անցնում ենք մեր ճանապարհը՝ բազմիցս կարիք ունենալով օգտվել գրադարանի և գրադարանավարի խորհուրդներից ու ծառայություններից՝ ցավոք հազվադեպ առիթ փնտրելով գնահատելու և արժևորելու այդ համեստ ու բարեհամբյուր մարդկանց ու նրանց անշահախնդիր աշխատանքը:

Հայ գրադարանի գործունեության զարգացման գործում շատ այլ նմանատիպ օջախների նման իրենց ավանդն ունեն նաև Վանաձորյան գրադարաններն ու գրադարանավարները:

Լծված սուրբ գործին, խոնարհ ծառա կարգված՝ այսօր նրանք մեծագույն սիրով ծառայում են իրենց ժողովրդին:

***Լեւոն ԽԱՉԱՏՐՅԱՆ***

# Կյանքը կարճապեւ էր, բայց փառքը հավերժական





Մեծ մարդիկ փառքի իրենց պատվանդանը իրենք են կառուցում, իսկ այն քարե հուշարձանի տեսքով գալիք սերնդին են հանձնում վարպետի մնայուն արժեքների երախտավորները:

«Հանուն Գուգարաց աշխարհի» բիկ-ի նախագահ Վահրամ Բաղդասարյանը հոգու թելադրանքով վանաձորյան մարդասիրական իդեալներին ու գաղափարներին նվիրված հարուստ կոթողների շարքը հարստացրեց ևս մեկով:

Միեր Մկրտչյան փողոցի սկզբնամասում տեղադրվեց մեծն վարպետի արձանը /հեղինակ Արամ Մարգարյան, համահեղինակ Սարգիս Ղարիբյան/:

Բացման արարողությանը իրենց մասնակցությունը ունեցան ՀՀ և մարզի պետական այրեր, հոգևոր թեմի առաջնորդ Սեպուհ եպիսկոպոս Չուլջյանը, ճանաչված արվեստագետներ, հարյուրավոր վանաձորցիներ, հյուրեր:

Ինչպես նշեց ՀՀ մշակույթի նախարար Հասմիկ Պողոսյանը. «Կարծում եմ Ֆրունզիկ Մկրտչյանի մասը կցանկանան ունենալ բոլոր քաղաքներն ու գյուղերը: Փառք Վանաձորին, որ այստեղ ևս կանգնեցվեց մեծ արտիստի արձանը»:

Այսուհետ ամենատխուր աչքերով հայը «կխոսի» ամեն մի վանաձորցու հետ՝ սովորեցնելով նրանց ժպիտով նայել կյանքի դժվարություններին:

*Մեծի մեծարումը կարող է գովք կարծվել, բայց չի կարող հասնել գովաբանության, որովհետև նա դրա կարիքը չունի, նա բարձր է գովքից էլ, գովասանքից էլ:*

*Պարույր Սևակ*

Հազարավոր լոռեցիների սրտի խոսքը ներկաներին հղեց նաև Լոռու մարզպետ Արամ Քոչարյանը.

- Մեր սիրելի Ֆրունզիկը շատ էր սիրում Վանաձորը և հաճախակի էր լինում այստեղ. այսօր նա կրկին եկավ ու կմնա մեզ հետ, լոռեցիների սրտում:

***Լեւոն ԽԱՉԱՏՐՅԱՆ***

# *Հետաքրքիր է իմանալ*

Հայերը շատ վաղուց ունեին մի այսպիսի սովորույթ. մատաղ անելիս վանքին էին թողնում մատաղացուի մորթին, որից մասնագետ վարպետներն ու գրիչները մշակում և պատրաստում էին մագաղաթ:

«Հայդուռ». 2-րդ դարից այսպես է կոչվել Եգիպտոսի Սաուդ քաղաքի յոթ դարպասներից մեկը: 6-րդ դարից մինչև 20-րդ դարի սկիզբը այդպես է կոչվել նաև Պոլսի աշխարհահռչակ ս. Սոֆիայի տաճարի ավագ դուռը:

Ագաթանգեղոսի գիրքը միջնադարում և ժամանակին թարգմանվել է արաբերեն, պարսկերեն, հունարեն, սլավոներեն, լատիներեն, ղփչաղերեն:

Ըստ հնդիկականավոր հնագետ Դիքշիթի դեռևս մ.թ.ա. երկրորդ հազարամյակի կեսերին Հայկական լեռնաշխարհից Հնդկաստան էր ներմուծվում «Հայաս» կոչվող երկաթը:

Ֆահրադ Ափուջանյանը, որպես մարդ ու քաղաքացի, «պատնեշի վրա է»՝ առաջին գծում և երբեք չի ընկրկում դժվարությունների առաջ, խրախուսում ու օրինակ է ծառայում շրջապատի մարդկանց:

Պապ ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ
«Սևան» թերթի գլխավոր խմբագիր

Ֆահրադ Ափուջանյանն իր շրջապատից տարբերվում է գրագիտությամբ, հարուստ գիտելիքներով, արվեստի և գրականության իմացությամբ: Նա նաև մի ներքին հմայք ունի, որով գրավում է շրջապատի մարդկանց ուշադրությունը:

*Համլետ ԽԱՉԱՏՐՅԱՆ*
*«Թալին աշխարհ» թերթի գլխավոր խմբագիր*

# ՖԱՀՐԱԴ ԱՓՈՒՋԱՆՅԱՆԸ 60 ՏԱՐԵԿԱՆ Է

Երբ խոսք է գնում մի այնպիսի մարդու մասին, ինչպիսին Ֆահրադ Ափուջանյանն է, ըստ իս, կենսագրական տեղեկություններն ավելորդ են թվում: Մարդուն նրա աշխատավայրերը թվարկելով չես բնութագրի: Ղեկավարի իրական կերպարը գնահատվում է նրա աշխատակիցների, ինչպես նաև նրա անհատականությունը խորապես ճանաչած մարդկանց, հասարակության լայն խավերի կողմից ընդունած և արտահայտած կարծիքներով ու վերաբերմունքով:

60-ամյա իմ վաղեմի բարեկամի ու գործընկերոջ, բանասերի, ժուռնալիստի, ուսուցչի, քաղաքագետի, արվեստի ու գրականության անխոնջ մշակի մեզ տված հսկայական ժառանգությունը ինքնին համարվում է նրա կենսագրության ու անցած տարիների մեծագույն ամփոփագիրը: Տարիներ առաջ նրան հղած ուղերձում Գուգարաց թեմի առաջնորդ Սեպուհ եպիսկոպոս Չուլջյանը գրում է. «Մեծապես գնահատելով Ձեր անմնացորդ ծառայությունը հասարակական կյանքում՝ ցանկանում ենք, որ Աստծո օգնությամբ իրականանան Ձեր ազգանվեր ու աստվածահաճո բոլոր ծրագրերը՝ ի փառս մեր հավատավոր ժողովրդի: Թող Բարձրյալն Աստծո Աջը միշտ հովանի լինի Ձեզ և Ձեր ընտանիքի բոլոր անդամներին»:

Եվ այսպես, 60 երկար ու ձիգ տարիների 40-ը նա անմնացորդ նվիրել է ի փառս մեր ժողովրդի: Աշխատելով կուսակցական ու խորհրդային մարմիններում՝ Ֆահրադ Ափուջանյանը միշտ մնաց հայ ժողովրդի մի հատվածի՝ աղետի ենթարկված Սպիտակի շրջանի բնակչության յուրաքանչյուրի սրտակից բարեկամը՝ մշտապես իր նպասը բերելով Սպիտակ քաղաքի ու գյուղական համայնքների բարգավաճման նվիրական գործին:

Երկրաշարժին հաջորդած սոսկալի պահերին նա չլքեց հայրենի երկիրը: Տասնյակ զոհված և վիրավորված ընկերների, հարազատ-բարեկամների ցավը սրտում անձնվիրաբար օգնում էր յուրաքանչյուր աղետյալի: Այդ տարիներին՝ լինելով շրջխորհրդի գործկոմի նախագահի առաջին տեղակալի պաշտոնում, Ափուջանյանը իր անբասիր աշխատանքով կրկին ապացուցեց, որ ինքն անփոխարինելի է ոչ միայն մտավորականի գործունեության մեջ:

Տղամարդու համար հասուն այս տարիքում նա հասցրեց նվաճել բարձունքներ, ճաշակել պաշտոնի քաղցրությունն ու դառնությունը, պատասխանատվությամբ վերաբերվել իր աշխատանքին, ինչ մասշտաբի ղեկավար և որտեղ էլ եղել է, միշտ մնացել է ազնիվ, սկզբունքային, առաքինի, բարի ու անկաշառ ընկեր, որի համար էլ արժանացել է համընդհանուր սիրո և հարգանքի:

Խորհրդային տարիներին մեր գրականության մեծերի երկերից կցկտուր տեղեկություններ էինք ստանում սփյուռքի լրագրողների մասին ու անկեղծորեն զարմանում, թե մի անձը ինչպես կարող է մի ողջ թերթի հրատարակման ու տպագրման գործը կազմակերպել: Ֆահրադ Ափուջանյանն ավելին ապացուցեց: Խորհրդային ժամանակների «Լուսարձակի» 15 հաստիքային աշխատող լրագրողներին ոչ միայն միայնակ փոխարինեց, այլ այդ նույն թերթը իր որակով, հետաքրքրությամբ ու գեղարվեստական արժեքներով այսօր երբեմն գերազանցում է հանրապետական շատ լրագրերի: Լրագրող Ափուջանյանը նաև «Մաշտոց» հանդեսի խմբագիրներից է և բազմիցս հանդես է եկել հետաքրքիր ու բովանդակալի հրապարակումներով: Այս բոլորը աննկատ չի մնացել պատկան կազմակերպությունների կողմից: Հայ լրագրության զարգացման գործում ունեցած մեծ ավանդի համար, 2004-ին, ժուռնալիստների միջազգային կոնֆեդերացիայի կողմից արժանացել է դիպլոմի: 2005-ին դարձել է Հայաստանի ժուռնալիստների միության «Ազդարար» մրցանակի դափնեկիր, 2006-ին ստացել է խաղաղության Նոբելյան մրցանակի դափնեկիր Ֆրիտյոֆ Նանսենի ոսկե մեդալ, իսկ 2009-ին՝ «Սանահին» կառավարման ինստիտուտի պատվավոր պրոֆեսորի կոչում: 1995-ից Հայաստանի ժուռնալիստների միության վարչության անդամ է:

Մտածում եմ, որ Ֆահրադի «բախտը բերել է» այն առումով, որ բնությունը շռայլ է գտնվել նրա նկատմամբ՝ գեղեցկադեմ, առնական, շիտակ, հանդարտաբարո, զարմանալի

21➲

խոնարհ ու մեղմ: Անկրկնելի հմայք ունի, հետաքրքիր պատմող ու զրուցակից է, և ամեն մի նոր ծանոթ նրան կրկին հանդիպելու, զրուցելու, կիսվելու պահանջ է ունենում: Ունի հռետորի ձիրք: Նա շատ շնորհաշատ սեղանապետ է: Ֆահրադը ծնվել է մի ընտանիքում, որի հայրը՝ Արամայիս Ափուջանյանը, շրջանում հարգված ու սիրված ղեկավար լինելով, նաև մեծ գրասեր, ես կասեի՝ գրապաշտ էր: Սակայն այդ երբ է «մի ծաղկով գարուն եկել»: Ֆահրադի հետ ծնվել էր մի պարարտ հոգի, սիրտ ու էություն, որտեղ տարիների ընթացքում ծլարձակվեցին բյուրավոր ծառ ու ծաղիկներ, որոնց թարմությամբ ու պտղառատությամբ շրջապատված են նրա մեծ շրջապատի մարդիկ ու նրան իմացող բարեկամ-ընկերները: Ֆահրադ Ափուջանյանից ծնված չորս որդիներն էլ հոր նման կիրթ մտավորականներ են, որոնց մարդկային բարձր արժանիքներով դաստիարակելու գործում մեծ ավանդ է ներդրել նրա կինը՝ վաստակաշատ մանկավարժ, մորը և հայ կնոջը վայել մեծագույն հատկանիշներով օժտված Արևաշողի դպրոցի նախկին տնօրեն Գյուլվարդ Համբարյանը: Հենց այս փառահեղ տիկնոջից հետո է Ֆահրադը սիրում մնացած կանանց: Նրա 17 հոգուց բաղկացած գերդաստանի անդամները. որդիները՝ միջազգայնագետ-պատմաբան Սևակը, ՀՀ նախագահի աշխատակազմի աշխատակից Նարեկը, աշխարհագրագետ Կարենը, ֆիզկուլտուրայի ուսուցիչ Հակոբը, հարսները՝ մանկավարժական գիտությունների թեկնածու Աննան, դիսերտանտ Լիլիթը, բուժաշխատող Արմիկը, ուսուցչուհի Թեհմինեն, 7 թոռնիկները՝ Արաքսը, Արամայիսը, Արամազդը, Գրիգորը, Վահեն, Հրատը, Արամը աչքի են ընկնում միմյանց նկատմամբ սիրով ու հոգատարությամբ, և այսօր այդ գերդաստանը իր մեջ կրում ու պահպանում է ոչ միայն ազգային, ընտանեկան ավանդույթները, բարքերը, այլև ջատագովն է առողջ ու արժանավոր և հանրության կողմից ընդունելի ու ընկալելի նորությունների: Ֆահրադ Ափուջանյանի գերդաստանի անցյալը օրինակելի է, ներկան բարությամբ ու հումանիզմով լցված, ապագան՝ հրաշալիորեն տեսանելի: Թող այն իրականում էլ լինի այնպես գեղեցիկ, խաղաղությամբ ու բարությամբ լեցուն, ինչպես մեզ՝ իրեն ճանաչողներիս լավագույն ցանկություն-մաղթանքն է գերդաստանի հոր՝ Ֆահրադ Ափուջանյանի 60-ամյակի առիթով:

Իր հայրենի բնության ու մարդկանց նկատմամբ սիրով լցված՝ նա իր շրջապատի մարդկանց ճակատագիրը համարում է իրենը՝ ապրելով յուրաքանչյուրի հոգսերով, տխրությամբ ու ուրախությամբ: Ափուջանյանի այս նվիրական հատկանիշների արդյունքում ծնվեց, ո՜չ, հրաբխի պես ժայթքեց «Արևաշող» հսկայածավալ գիրքը: Եթե իր աշխատանքային գործունեության 40 տարիների ընթացքում նույնիսկ ոչինչ արած չլիներ, ապա այս գիրքն էլ բավական է գնահատելու Ֆահրադ-մտավորականի անսահման նվիրվածությունն իր գործին, իր ժողովրդին, ինչպես նաև նրա տիտանական աշխատասիրությանը: Այս գրքի յուրաքանչյուր էջից պարզապես կաթում է Արևաշողի բառն ու բանը, երգն ու տաղը, գյուղին ու նրա մարդկանց հատուկ հումորը, փիլիսոփայությունն ու աշխարհընկալումը: Անգնահատելի պատմական արժեք ներկայացնելով՝ գիրքը կարող է հանդիսանալ նաև արխիվային հսկայական շտեմարան ու նաև գյուղի հանրագիտարան: «Արևաշողը» համարվում է Արևաշողի ու արևաշողցիների փառքի ու հավերժության մատյանը:

Թանկագին եղբայր, հոբելյանիդ առթիվ հակասական մտորումներ կունենաս... Չէ՞ որ բացարձակապես չես զգում, որ 60 ես: Եվ հետադարձ հայացք գցելով անցած ուղուդ՝ միամտորեն զարմանում ես, որ այս ամենը տեղի է ունեցել ընդամենը մի կյանքի ընթացքում: Մյուս կողմից էլ հանկարծակիորեն մտածում ու գիտակցում ես, որ հայտնվել ես ցայտնոտում: Քանզի ինչ որ արել ես, սիրելի Ֆահրադ, ոչինչ է թվում այն հսկայական չարածի, դեռ անելիքի հանդեպ:

***Հակոբ ԱԶԻԶՅԱՆ,***
***ՀՀ ժողովրդական արտիստ, պրոֆեսոր***

# «Նռան հատիկ» փառատոնի առջեւ իր դռներն էր բացել Անանիա Շիրակացու անվան ճեմարանը

«Նռան հատիկ» մանկապատանեկան փառատոնի շրջանակներում Անանիա Շիրակացու անվան ճեմարանում կայացավ ճեմարանի մնջախաղի թատրոնի «Ծովի հեքիաթ» և «Հայելի», ինչպես նաև «Կանաչ մոլորակ» միջազգային մրցույթի դափնեկիր ճեմարանի թատերական ստուդիայի «Մոգերի ընծաները» ներկայացումները: Միջոցառումը կազմակերպվել էր թատերական ստուդիայի ղեկավար, փառատոնի հիմնադիր անդամ Գեորգի Խոջոյանի և փառատոնի համահիմնադիր Գարիկ Ղազարյանի նախաձեռնությամբ: Որպես փառատոնի հիմնադիր՝ «Նախաբեմ» ասոցիացիայի նախագահ Գեորգի Խոջոյանը ՀՀ մշակույթի նախարարության կողմից պարգևատրվել է ոսկե մեդալով:

«Նռան հատիկը շարունակվու՜մ է», - երեխաների այսպիսի գոչյունով սկսվեց տասներորդ հոբելյանական միջոցառումը, որը նվիրված էր հայ մեծագույն վարպետ Ավետիք Իսահակյանի 135 ամյակին: «Պետք է երջանիկ ավարտ ունենա մեր սկսած ցանկացած գործ», - Օ. Հենրիի «Մոգերի ընծաները» ստեղծագործության բեմադրությունից հետո՝ դիմելով հանդիսականին, ասաց կրթօջախի թատերական ստուդիայի ղեկավար Գ. Խոջոյանը:







Փառատոնի շրջանակներում միջոցառումներ են իրականացվել տարբեր թատերասրահներում, ինչպիսիք են, օրինակ՝ «Մետրո» թատրոնը, «Համազգային թատրոնը»: Այս անգամ փառատոնի առջև իր դռներն էր բացել նաև Անանիա Շիրակացու անվան ճեմարանը:

Փառատոնի նպատակն է երեխաներին ծանոթացնել դրամատուրգների լավագույն գործերին, զարգացնել թատերական շարժումը՝ հատկապես մարզերի դպրոցներում:

**Անանիա Շիրակացու ճեմարանը աշխարհի 56 դպրոցների թվում կմասնակցի Մայքրոսոֆթի «Նորարար դպրոցներ» միջազգային ծրագրին**

Անանիա Շիրակացու անվան Ճեմարանը աշխարհի 48 երկրների 56 դպրոցներից մեկն է, որ կմասնակցի Մայքրոսոֆթի «Գործընկերներ ուսման ոլորտում» ծրագրի շրջանակներում իրականացվող «Նորարար դպրոցներ» միջազգային ծրագրին: Ճեմարանից ստացված հաղորդագրության համաձայն, այս ծրագրին մասնակցելու համար դիմել էին աշխարհի ավելի քան 114 դպրոցներ «և վերջապես բարդ ընտրության և բարձր մրցակցության արդյունքում Ճեմարանը դարձավ այն ամենաառաջավոր դպրոցներից մեկը, որոնք կմասնակցեն «Նորարար դպրոցներ» ծրագրին»:

Այդ կապակցությամբ Ճեմարանը

➲23

# Սպիտակի երկրաշարժը միայն բնական աղետ չի եղել

**Տեխնիկական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր Լավրենտի Սեդրակյանը իր հայտնագործած տատանվող համակարգի նոր հատկության միջոցով ապացուցել է, որ երկրաշարժը ոչ թե 9 բալ, այլ դրանից 5-10 անգամ ավելի ուժգնություն է ունեցել:**

1988 թվականի դեկտեմբերի 7-ին կլրանա Սպիտակի երկրաշարժի 22-րդ տարին: Բնական աղետ ներկայացված երկրաշարժը տասնյակ հազարավոր անմեղ զոհերի պատճառ եղավ: Ավերված նյութական արժեքները գնահատվեցին շուրջ 16 մլրդ դոլար: Տեխնիկական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր 85-ամյա Լավրենտի Սեդրակյանը «Առավոտի» միջոցով ցանկացավ մեկ այլ երկրաշարժի բնական աղետ լինելու հանգամանքի վրա ուշադրություն դարձնել: Միայն մեր տվյալներով, 25 հազար զոհ տված 1988-ի աղետին նա գենոցիդ անվանումն է տալիս, քանի որ գիտականորեն ապացուցել է այդ երկրաշարժը ամենեւին էլ բնական աղետ չէր: Լ. Սեդրակյանը պոլիտեխնիկական ինստիտուտում սովորելիս եւ ասպիրանտուրայում անվանական թոշակառու է եղել, 25 տարեկանում ստացել տեխնիկական գիտությունների թեկնածուի աստիճան, 35-ում եղել է «Հայսեյսմշին եւ կառուցվածքների պահպանման ինստիտուտի» (նախկինում «Շինանյութերի եւ կառուցվածքների ԳՀԻ» - Լ. Խ.) տնօրենը, այժմ էլ նույն ԳՀԻ-ում լաբորատորիայի վարիչ է աշխատում: «Այն ժամանակ աղետի գոտու տարածքի ամբողջ ազգաբնակչությունը տեղյակ էր, որ երկրաշարժի պայմաններում նախապատրաստվում էին ԽՍՀՄ զինված ուժերի վարժանքներ անցկացնել եւ արհեստական երկրաշարժ առաջացնել: Այդ բոլորը կատարվում էր ժողովրդի աչքի առաջ: Եվ հանկարծ 5-6 բալ ուժգնության երկրաշարժի փոխարեն տեղի ունեցավ կործանարար երկրաշարժ», - նշում է Լ. Սեդրակյանը: Ինչ վերաբերում է 9 բալ գնահատված երկրաշարժին, գիտնականը կարծում է, որ 9 բալը նման ավերիչ հետեւանքներ ունենալ չէր կարող: Նույն կարծիքն էր հայտնել նաեւ ԽՍՀՄ-ի Սպիտակի երկրաշարժի հետեւանքներն ուսումնասիրող հեղինակավոր հանձնաժողովը: «Դժբախտաբար, երկրաշարժի ժամանակ ցնցումները գրանցող սարքավորումներ չեն եղել: Միակ բնակատեղին Գյումրին էր, որտեղ երկրաշարժի ժամանակ երկրի ցնցումները գրանցող սարքեր են եղել, իսկ Սպիտակում, Նալբանդում եւ էլի ուրիշ բնակավայրերում երկրաշարժի առաջացրած ցնցումները հնարավոր չի եղել չափել», - փաստում է մեր զրուցակիցը: Նրա խոսքով Գյումրիում եղած 9 հարկանի 111 սերիայի բնակելի 138 շենքերը գետնին են հավասարվել: Լ. Սեդրակյանը գտնում է, որ եթե շենքերը որակյալ կառուցված լինեին, 9 բալ ուժգնությամբ երկրաշարժին պետք է դիմանային: Հարցին, թե ինչպես է որակյալ լինելու հանգամանքն ապացուցում, նա պատասխանում է. «Ցույց եմ տվել, որ այդ շենքերի որակը ցածր չի եղել հաշվի առնելով, թե որ գործարաններն են կառուցել եւ որ կազմակերպությունները մոնտաժել»: Բացի այդ, նա նաեւ նշեց, որ այդ նույն շենքերից նաեւ Վանաձորում են եղել 130-ը, որ չեն փսասվել, այն դեպքում, երբ մեր զրուցակցի խոսքով, Վանաձորում երկրաշարժի ուժգնությունը եւս գնահատվել էր 9-10 բալ. «Սա նշանակում է, որ ԽՍՀՄ քաղբյուրոյի եւ մյուսների համատեղ հանձնաժողովի վճիռը, որ երկրաշարժի ուժգնությունը եղել է 9 բալ, հալած յուղի տեղ չպիտի ընդունել»:

Լ. Սեդրակյանին երկար պրպտումների արդյունքում հաջողվել է հայտնաբերել տատանվող համակարգի նոր հատկություն, ինչը հաճախ չի լինում: Հայտնագործած համակարգի նոր հատկության կիրառումով ստացված երկրաշարժերի ազդեցության օրինաչափություններից եւ Գյումրիում գործիքային չափումների արդյունքներից ելնելով նա հաշվարկել է, որ Գյումրիում շենքերը տապալվել են հեղինակավոր հանձնաժողովի գնահատած 9 բալից 5-10 անգամ ավելի ուժեղ ցնցումների արդյունքում. «Նոր հատկությունը հնարավորություն է տվել չափազանց պարզ հավասարումներով ներկայացնելու տատանվող համակարգի օրինաչափությունները նաեւ երկրաշարժերի ազդեցության ժամանակ: Այդ 5-10 անգամ ավելի ուժեղ ցնցումները կարող են լինել արհեստական 6,7 բալ ուժգնության ռազմական վարժանքները անցկացնելու համար նախապատրաստած ցնցումների ժամանակ թույլ տված կոպիտ սխալների արդյունքում»: Լ. Սեդրակյանը պատահական չի համարում նաեւ վարժանքի աշխատանքները նախապատրաստող հրամանատարական ամբողջ կազմի ռազմական ինքնաթիռով Բաքու ճանապարհելիս ինքնաթիռի կործանումը, որի ժամանակ նրանցից ոչ մեկը կենդանի չմնաց. «Չի բացառվում, որ դա հատուկ առաջադրանքով կատարված կործանում էր, որպեսզի կոծկեին ահավոր կործանումները առաջացրած եւ ժողովրդի դեմ հանցանք կատարած պետությունների պատասխանատվությունը, եթե ոչ այդ երկրների ղեկավարները պետք է կանգնեին դատարանի առաջ»:

Գիտնականը կարծում է, որ զինվարժանքներն անցկացնում էին ԽՍՀՄ-ը եւ ԱՄՆ համատեղ, հետեւաբար սխալը երկուսի մեղքով էր: Լ. Սեդրակյանը կարծում է, որ այս բնագավառի խոշոր գիտնականները կամ պետք է ցույց տան, որ ինքն իր հայտնագործության մեջ թույլ տված սխալներ ունի, կամ էլ ընդունեն, որ ժողովրդի նկատմամբ 1988-ին հանցանք է կատարվել:

***Լուսինե ԽԱՉԱՏՐՅԱՆ***

**22➲** **Անանիա Շիրակացու ճեմարանը**

«Մայքրոսոֆթ» կազմակերպության հայաստանյան գրասենյակից ստացել է շնորհավորական ուղերձ, որում, մասնավորապես, ասված է. «Եվս մեկ անգամ հպարտությամբ շնորհավորում ենք Անանիա Շիրակացի ճեմարանին միջազգային հաջողության համար և ծրագրի ողջ ընթացքում պատրաստակամ ենք աջակցել ցանկացած հարցում՝ Հայաստանը միջազգային հանրությանը ներկայացնելու, ծրագիրը հաջողությամբ ճեմարանում իրականացնելու, Ձեր փորձը այլ դպրոցներին ներկայացնելու և միջազգային հանրությանը տարաբնույթ ծրագրերով ներկայանալու»:

Ինչպես տեղեկացնում են ճեմարանից, Ծրագրում ընդգրկված դպրոցներն ընտրվում են իրենց ամբողջ ներուժով ստեղծելու ճկուն, փոխանցելի և վստահելի մոդելներ, որոնք կարող են ազդեցություն ունենալ և փոխանցել իրենց փորձն ու ստեղծված մոդելները այլ դպրոցների՝ թե՛ իրենց երկրներում, թե՛ տարածաշրջանում և թե՛ ամբողջ աշխարհում:

«Անանիա Շիրակացու անվան ճեմարանի ողջ անձնակազմը հպարտութամբ և մեծ ոգևորությամբ ընդունեց այս շնորհավորանքը՝ ձգտելով նորանոր նվաճումների, որոնք հնարավոր են մեծ աշխատասիրության, համախմբվածության և ուսումնական բարձր որակի ապահովման շնորհիվ», - ասված է ճեմարանից ստացված հաղորդագրության մեջ:

**17➲** ***Ջանազան-զարմանազան***

առաջին իգական վարժարանը:

1850 թ. հունիսին առաջին անգամ Երևան ժամանեց Կ. Պոլսի Արամյան ընկերության հայ թատրոն-կրկեսը՝ Յովհաննես Գասպարյանի ղեկավարությամբ: Երևանում խաղացին առաջին հայերեն ներկայացումները:

1856 թ. դեկտեմբերի 23-ին Կովկասի փոխարքա Ա. Խ. Բարյատինսկու կողմից հաստատվեց Երևանի վերափոխման առաջին հատակագիծը:

1863 թ. կառուցվեց Երևանի առաջին փողոցն՝ ըստ 1856 թ. հատակագծի, և նահանգապետ Աստաֆևի անունով կոչվեց Աստաֆևսկայա (այժմ՝ Աբովյան փողոց):

1864 թ. հունվարի 21-ին շահագործման հանձնվեց Երևանի առաջին հեռագրագիծը, որը ձգվում էր Թիֆլիսից մինչև Երևան և անցնում էր Դիլիջանով:

1865 թ. Երևանում մի խումբ երիտասարդների նախաձեռնութամբ և փոխանորդ Ստեփանոս արքեպիսկոպոսի օգնությամբ բացվեց առաջին ընթերցարան-գրադարանը:

1865 թ. աշնանը առաջին անգամ Երևան ժամանեց Թիֆլիսի հայկական թատրոնը Գ. Չմշկյանի ղեկավարությամբ:

1866 թ. Երևանի հայոց հոգևոր թեմական դպրոցի ուսուցիչների ջանքերով ստեղծվեց առաջին (գավառական) թատրոնը:

1866 թ. ապրիլի 10-ին Երևանում մասնավոր տան մեջ բացվեց Գայանյան օրիորդաց դպրոցը, որը 1877-ին տեղափոխվեց Պողոս-Պետրոս եկեղեցու գավիթ:

1866 թ. հուլիսի 1-ին առաջին անգամ դիլիժանսով (հանրակառք) մշտական երթևեկություն սկսվեց Երևանից Թիֆլիս, ապա՝ Քութայիս:

1874 թ. Զաքարիա Գևորգյանը հիմնեց Երևանի առաջին տպարանը, որը գործեց մինչեւ 20-րդ դարի սկիզբը:

1878 թ. Երևանում բացվեց գարեջրի առաջին գործարանը:

1879 թ. սեպտմբերին տեղի ունեցան Երևանի քաղաքային վարչության և դումայի առաջին ընտրությունները, ընտրվեց 66 ձայնավոր (պատգամավոր): Յոկտեմբերի 1-ին բացվեց քաղաքային դուման:

1879 թ. Պողոս-Պետրոս եկեղեցու բակում՝ Գայանյան ուսումնարանին կից կառուցվեց Երևանի

**➲24**



# Անտոնիոնիի սիրած հայ նկարիչը

1976-ին իտալացի կինոռեժիսոր Միքելանջելո Անտոնիոնին այցելել է Հայաստան, եւ հյուրընկալության ծրագրի շրջանակներում նրան տարել են նաեւ այդ օրերին Երեւանում բացված Վիլեն Գաբազյանի անհատական ցուցահանդեսին: Անտոնիոնին շատ է հավանել նկարչի աշխատանքները, ինչի ապացույցը տպավորությունների գրքում թողած նրա գրությունն է. «Վիլենը հոյակապ նկարիչ է: Հավատացեք, սա ասում է Անտոնիոնին, ով գիտի, թե ինչ է գեղանկարչությունը»: Հարցազրույցներից մեկում Վիլենն այսպես է պատմում այդ հանդիպման մասին. «Մենք շփվում էինք թարգմանչի միջոցով, շուրջբոլորը անվտանգության աշխատակիցներն էին, բայց մենք իրար հասկանում էինք կես խոսքից»: Նկարիչն իր հերթին նկար է նվիրել Անտոնիոնիին, եւ նրանց միջեւ այնպիսի բարեկամություն է հաստատվել, որ Հայաստանից մեկնելուց հետո էլ Անտոնիոնին նամակներ է գրել Գաբազյանին:

Վիլեն Գաբազյանը Մինասի աշակերտն է եւ Վարուժան Վարդանյանի սերնդակիցը: Նրա ստեղծագործական կյանքի զգալի հատվածը համընկել է բրեժնեւյան լճացման տարիների հետ, երբ արվեստագետներից ու գրողներից ավելի մեծ համարձակություն, ինքնազոհաբերում եւ սկզբունքայնություն էր պահանջվում արվեստի ուղիով անշեղորեն քայլելու համար, քան Մինասի սերնդի նկարիչներից: Ձնհալի տարիներին ստեղծագործած, վաթսունականների սերնդի նորարարականմղումըոչմիայնարտոնվածէրԽՍՀՄ կառավարության կողմից, այլեւ խրախուսվում էր պետական մակարդակով: Պետությունը ոչ միայն կազմակերպում էր նրանց ցուցահանդեսներն ու կատալոգներ տպագրում, այլեւ պրոպագանդում էր նրանց արվեստը եւ այն հայտնի դարձնում «լայն զանգվածներին»: Հաջորդած սերնդի համար ավելի բարդ էր նկարիչ մնալը, քանի որ հետդարձի ճանապարհ այլեւս չկար: Նրանց բաժին հասավ իսկական «դիմադրությունը», եւ նրանք ստիպված էին ստեղծագործել լուսանցքում:

Այդ է պատճառը, որ այսօր նրանցից շատերի անունները ոչինչ չեն ասում շարքային հայ մարդուն: Իհարկե, եղան եւ նկարիչներ, ովքեր գնացին փոխզիջման ուղիով: Վիլեն Գաբազյանը լուսանցքն ընտրեց ոչ միայն ստեղծագործության առումով, այլեւ բնակության վայրի: Թերլեմեզյանի անվան գեղարվեստի ուսումնարանն ավարտելուց հետո նա շատերի պես չմեկնեց միութենական մայրաքաղաք Մոսկվա, որտեղ բացվում էին կարիերայի համար լավ հեռանկարներ: Եվ չմնաց անգամ Երեւանում, որտեղ տեղի էր ունենում դրամի, պաշտոնների ու փառքի դափնիների բաշխում:

Նա վերադարձավ իր ծննդավայր՝ Վանաձոր, եւ գավառական, արդյունաբերական այդ քաղաքում ստեղծեց արվեստի այնպիսի միջավայր, որը մինչ օրս էլ արվեստի ծիլեր է տալիս Երեւանին: Թե ինչպես է Երեւանը չորացնում այդ ծիլերը՝ այլ խոսակցության թեմա է, իսկ մենք կշարունակենք խոսել Վիլեն Գաբազյանից՝ արվեստագետից, ում ներկայությունն իսկ փոխում էր այդ քաղաքի՝ գործարանային ծխով հագեցած մթնոլորտը: Վիլենի արվեստանոցը արագ դարձավ Վանաձորի ստեղծագործական, մտավորական էլիտայի եւ արվեստասերների հավաքատեղի:

Շուտով Վիլենը ստիպված էր իր արվեստանոցը տեղափոխել եւ քաղաքի կենտրոնում գտնվող նախկին արվեստանոցը վերածել սրճարանի: Ես տասնհինգ տարի առաջ եղել եմ այդ սրճարանում, որ կրում էր «Վիլոյի մոտ» անունը, եւ այստեղ էլ ծանոթացել եմ վանաձորցի այն արվեստագետներին, որոնց հետ արժեր ծանոթանալ: Այդ օրերին սրճարանը Վանաձորի սիրտն էր, որի յուրաքանչյուր անկյունից զգացվում էր արվեստի շունչը: Գաբազյանի հետ հանդիպումը ակնթարթային էր, բայց անմոռանալի՝ նկարչի տաղանդի ու հումորի շնորհիվ:

Վանաձորյան իր արվեստանոցում նստած՝ Վիլեն Գաբազյանը երազում էր Մշո դաշտ նկարել եւ գիտեր, որ երբեք չի նկարելու: Քաղաքը, որտեղից բռնագաղթել էին իր պապերը, երբեք չէր տեսել եւ չէր էլ տեսնելու, բայց Մուշի կերպարը փոխանցվել էր իրեն գենետիկ հիշողությամբ: Իր իսկ խոսքերով, Լոռվա բնությունը չափազանց շքեղ ու քաղցրավուն էր իր համար: Նա խուսափում էր օգտագործել կանաչի երանգները, որոնցով ողողված է Լոռվա բնաշխարհը: Կավահողի եւ կիսաանապատային բնության ժուժկալ գույներն էին գերիշխում նրա գեղանկարներում, որոնցում վերստեղծում էր իր պապերի կորցրած երկիրը՝ միահյուսելով ժամանակակիցների կենցաղն ու ժողովրդական բանահյուսությունը:

Արդեն ութ տարի է, ինչ Գաբազյանը չկա: Մահից հետո նրա ընտանիքը տեղափոխվեց Երեւան, իսկ նկարչի աշխատանքները փակված են վանաձորյան բնակարանում: Լոռվա մարզպետարանն ու Վանաձորի քաղաքապետարանը հորդորել էին հարազատներին չզբաղվել նկարչի մահարձանի ծախսերով՝ հայտարարելով, թե «Վիլոն բոլորինն է»: Նախատեսված էր քաղաքապետարանի միջոցներով նաեւ հուշատախտակ տեղադրել այն շենքի պատին, որտեղ բնակվել ու ստեղծագործել էր նկարիչը: Սակայն հուշատախտակը չտեղադրվեց, եւ մահարձանի ծախսերն էլ ստիպված եղավ հոգալ ընտանիքը:

Բայց ինչ է արել պետությունը Վիլեն Գաբազյանի համար նրա կենդանության օրոք, որ ինչ աներ մահից հետո: Զարմանալի է, բայց փաստ. հիսնամյակի կապակցությամբ տպագրվել է նկարչի գրաֆիկական աշխատանքների մի բրոշյուր-կատալոգ՝ սեւ-սպիտակ տպագրությամբ: Ընդամենը: Սա այն դեպքում, երբ նկարիչը զուրկ չէր գնահատանքից ու ուշադրությունից: Հակառակը պնդելու հիմք չկա, եւ հազիվ թե Անտոնիոնիի նման ականավոր հյուրին տանեին միջակ նկարչի ցուցահանդեսի: Սա էլ Հայաստանի «արվեստասեր»՝ իշխանավորի գործելաոճն է, որ անփոփոխ է՝ գնահատել, երբ գնահատականը կարող է իրենց գնահատել, եւ մատնել մոռացության, երբ գնահատվելու խնդիր այլեւս չկա: Եվ սա է Հայաստանում ապրած ու ապրող այն արվեստագետների ճակատագիրը, ովքեր զուրկ են ճարպկությունից, չեն զբաղվում ինքնագովազդով եւ, Ստանիսլավսկու խոսքերով ասած, ոչ թե իրենց են սիրում արվեստի մեջ, այլ արվեստը՝ իրենց մեջ: Այսինքն՝ իսկական արվեստագետների:

23➲ *Ջանազան-զարմանազան*

առաջին թատրոնի շենքը՝ բեմահարթակով:

1880 թ. մարտի 5-ին լույս տեսավ «Պսակ» շաբաթաթերթի առաջին համարը՝ Վասակ Պապաջանյանի խմբագրությամբ:

1881 թ. հուլիսին լույս տեսավ Երևանի առաջին ամսագիրը՝ «Առողջապահական թերթիկը», որի խմբագիրն էր բժիշկ Լևոն Տիգրանյանը:

1883 թ. փետրվարի 1-ին լույս տեսավ «Երևանյան հայտարարություններ» թերթի առաջին համարը (խմբագիր-հրատարակիչ՝ Էմին Տեր-Գրիգորյանց):

1890 թ. Ն. Թաիրովի գործարանը թողարկեց երևանյան առաջին կոնյակը:

1891 թ. նախկին գավառական արական դպրոցի շենքում բացվեց Երևանի առաջին քաղաքային ակումբը, որն առավել հայտնի է Ջանփոլադյանի թատրոն անվամբ (հետագայում՝ Սպայի տուն):

1892 թ. Երևանում գործարկվեց հանքային ջրերի և օշարակի առաջին գործարանը, որը պատկանում էր Խաչիկ Գիլանյանցին:

1893 թ. փետրվարի 4-ին Երևանում բացվեց առաջին քաղաքային հիվանդանոցը:

1901 թ. դեկտեմբերի 16-ին սկսեց գործել Թիֆլիս-Ալեքսանդրապոլ-Երևան երկաթուղին:



1902 թ. դեկտեմբերի 5-ին բացվեց Ալեքսանդրապոլ-Երևան երթուղու նոր գիծը: Երևանի և Ալեքսանդրապոլի միջև սկսվեց կանոնավոր ամենօրյա երթևեկություն:

1906 թ. սեպտեմբերին Երևանում առաջին անգամ ելույթ ունեցավ Կոմիտասի երգչախումբը:

1906 թ. սեպտեմբեր-դեկտեմբերին շահագործման հանձնվեց Երևանի քաղաքային ձիաքարշը (կոնկա): Մի երթուղին ձգվում էր Աստաֆյան փողոցով, մյուսը տանում էր դեպի կայարան:

1907 թ. մայիսին գործարկվեց Երևանի առաջին հիդրոէլեկտրակայանը, որը պատկանում էր «Շուստով և որդիներ» ընկերությանը:

1909 թ. սեպտեմբերի 25-ին Երևանում բացվեց առաջին մանկապարտեզը՝ Վարդուհի Հովհաննիսյանի նախաձեռնությամբ: Այն գտնվում էր Բեհբության (ներկայիս Արամի) փողոցում:

1911 թ. դեկտեմբերի 23-ին գործարկվեց Երևանի ջրմուղը, որը Երևան հասցրեց 20 կմ հեռավորության վրա գտնվող Քառասունակնի ջուրը:

20-րդ դարասկզբին Երևանի առաջին կինոթատրոններն էին «Ապոլլոն»-ը, որը պատկանում էր Գևորգյանին և գտնվում էր քաղաքային այգում, և «Գրանդ իլյուզիոն»-ը, որը գտնվում էր Ջանփոլադյանի թատրոնի շենքում:

1913 թ. փետրվարի 9-ին Ջանփոլադյանի թատրոնում կայացավ «Անուշ» օպերայի առաջին բեմադրությունը, ղեկավարեց հեղինակը՝ Արմեն Տիգրանյանը:

1913 թ. ապրիլին Երևան մուտք գործեց առաջին ավտոմեքենան, որը պատկանում էր Շուստովի ազգակից Ֆիլատովին:

1913 թ. մայիսի 12-ին սկսեց գործել Երևանի

➲34

